# ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴ ՄԸ

## ԿԸ ՅԵՂԱՇՐՋԷ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՄԻՏՔԸ 300 ՏԱՐԻ ԱՌԱՋ

Ե.

Նախ՝ ամէնէն անմեղ քննադատութիւնը, զոր կը կատարէ Տոքթ. Հէօֆէր՝ քիչ մը հեգնանքով և քիչ մը ցաւով. «Իր երիտասարդ տարիքին մէջ մեռաւ այն որ կը յաւակնէր թէ գտած է միջոցը մարդկային կեանքը երկարելու աւելի քան հարիւր տարի»:

Այստեղ հեգնանքը ճակատագրապաշտութիւն կը մատնէ, այլ մանաւանդ հաւատք մը թէ կարելի չէ փոխել բնութեան օրէնքները: Իսկ ցաւը կը բխի համակրանքէն, տաղանդաւոր երիտասարդին մահուան դէմ ընդվզումով մը զօրացած:

Բայց եւ այնպէս, պէտք է կատարել ճշդում մը: Գէորգ Հայկազն դեղագիրի մարդ չէր,— եւ պիտի չզբաղէի իրմով, ոչ ալ պիտի պարծենայի իր անունով, եթէ դեղագրի մարդ ըլլար՝ առաւել կամ նուազ յաջող դարմանումներու պատմութեամբ: Գէորգ Հայկազն մեծ է իբրեւ հեղինակ բժշկական – փիլիսոփայական տեսութեանց, իբրեւ միտք:

Արդարեւ, երբեք բարեկամ չէր դեղերու: Ինչպէս բոլոր դարերու բոլոր մեծ բժիշկները: Այն տեսակէտով թէ դեղաբանութիւնը չէ որ մեծ բժիշկ կը շինէ, այլ առողջաբանութիւնը: Ատոր համար է որ ըսուած է,— հի՛ն խօսք է.— «Բժիշկը հազուադէպ է որ բժշկէ, երբեմն կը յաջողի ամոքել միայն, այլ սակայն մի՛շտ կը մխիթարէ»:

Այս հին առածը, եթէ բժշկութեան կուտայ մխիթարութեան մը պաշտօնը միայն, չկարծէք թէ սկեպտիկ բժիշկի մը պարզ բանաձեւն է բժշկական գիտութեան առաքելութեան մասին: Ան կ'արտայայտէ դարերու իմաստութիւնը: Եկեր են ու գացեր մեծ գիտնականներ եւ սակայն մարդկային մարմինը չէ տուած իր գաղտնիքները: Անհո՛ւն ուժերու աղբիւր մըն է մարդկային մարմինը: Ինչ որ, այսօր, կ'անուանենք հող (terrain), գիտե՞նք թէ ի՛նչ է,— այդ բառով կ'ուզենք յատկանշել մարդկային մարմնին թաքուն եւ հրաշալի ուժերէն մին, որուն պայքարը, ափսո՛ս, յաճախ կը դժուարացնենք դեղ կոչուած նիւթական ռամիկ միջամտութեամբ: Եւ ի՛նչ կ'ըսեն արդի բժիշկները, հետեւողութեամբ անմահ Գլօտ Պէռնարի.— «Մեծագոյն բժիշկը հողն է, մանրէ կոչուած հրէշը բան մըն ալ չի կրնար ընել՝ եթէ դուք չտկարացնէք հողը(*): Արդ, որպէսզի հզօր մնայ հողը, սորվեցէք եւ սորվեցուցէք առողջապահութիւն»: Այս տեսութեամբ՝ հիմա բժիշկներ կան, որ կը յայտարարեն թէ հիւանդ մանուկ մը բժշկելու համար՝ պէտք է նախ դարմանել այդ մանուկին... եօթը պորտ նախորդող սերունդը (ascendance): Նիւթէս շատ պիտի հեռանայի, եթէ ուզէի քննադատել Փասթէօրի պայքարը մանրէներուն դէմ ու ... կենսանիւթերուն:

Եւ յետոյ, մանրէներն ալ ունին իրենց թաքուն կեանքը: Անոնց «իմաստութեան» մասին գրել՝ պիտի նշանակէր հատոր մը պատրաստել: Այսքանը միայն ըսեմ թէ մանրէն ալ ունի իր հակազդեցութիւնները, եւ գիտէ պաշտպանուիլ դեղին դէմ: Սիւլֆամիտները, սկզբնական օրերուն, սարսափ պատճառեցին մանրէներուն, բայց շուտով երեւան եկան դիմադրական կոչուած (résistant) մանրէներ: Փրոֆ. Կուժըրօ, քանի մը ամիս առաջ, բժշկական Ակադեմիային առջեւ զեկուցում մը կարդալով, թախանձագին կը խնդրէր բժիշկներէն՝ փէնիսիլլին չգործածել յումպէտս, որովհետեւ մանրէները դիմադրական ցեղեր կը ստեղծեն շուտով: Թողէք որ մարմինը ինք պայքարի, եւ «փէնիսիլլին»ով միջամտենք այն ատեն՝ երբ մարմինը մատնուած է յուսահատութեան: Բայց ո՞վ մտիկ կ'ընէ,— հիւանդին առջեւ հրաշագործ երեւնալու ցանկութեամբ, յաճախ հիւանդին իսկ փափաքով, բժիշկը հիմա կ'աշխատի փրկարար ցաւերն իսկ լռեցնել, իսկ վիրաբոյժը՝ երիտասարդ արգանդը հանել նետել, որո՞ւն հոգը թէ, ետքէն, այդ ամէնուն մեղքը պիտի քաշէ մարմինը:

Եւ ի՛նչ կ'ըսէ Գէորգ Հայկազն, երեք դարերու ետեւէն, այն բժիշկներուն, որոնք շատ դեղ կը գրեն կամ մեծ վստահութիւն ցոյց կուտան դեղերուն. «Անժամանակ կամ շարունակական ձեւով տրուած դեղերը կ'այլասերեն հիւանդութիւնը եւ կը ստեղծեն այնպիսի փոփոխութիւններ, զորս տգէտ (ignorant) բժիշկը կը շփոթէ հիւանդութեան իրական ախտանշաններուն հետ, մինչդեռ անոնք արդիւնքն են իր անխոհեմ դարմանումին»:

Ի՛նչպէս չհիանալ հայ մեծանուն բժիշկին իմաստութեան վրայ: Այս տողերուն պատճառած հիացումը աւելի մեծ է քան հին կամ նոր դեղի մը կատարած հրաշքը՝ յաճախ ժամանակաւոր:

Եթէ Գէորգ Հայկազն իրապէս մտածած է երկարել մարդկային կեանքը աւելի քան հարիւր տարի, կը կարծեմ թէ իր հաւատքը կը դնէր ոչ թէ դեղաբանութեան, այլ միայն առողջաբանութեան մէջ: Վասնզի փիլիսոփայ բժիշկ մըն էր, արդի բժշկութեան հետ համերաշխ, եւ ինչպէս կ'ընդունուի՝ բնախօսական վերջին գիւտերուն թելադրիչ: Ահա թէ ինչո՛ւ կը մերժեմ Տոքթ. Հէօֆէրի քննադատութիւնը:

Երկրորդ քննադատութիւնը, աւելի խիստ եւ դաժան, կ'ուղղուի Traité de la force motrice գրքին առթիւ: Խուսափելու համար մասնագիտական խրթին բացատրութիւններէ, ըսեմ միայն թէ այս գրքին մէջ կը պաշտպանուի solidisme տեսութիւնը՝ որ կ'ըսէ.— «Կարծր մարմիններու կրած ախտաբանական փոփոխութիւնները արդիւնք են ուղեղափառ կոչուած թաղանթին (méninges) ծփանքին»: Այս տեսութիւնը, որ մեքենագիտական ալ կը կոչուի, չի կրնար տոկալ քննադատութեան, եւ սակայն պատրուակ ծառայեց Գէորգ Հայկազնը հարուածելու: Առաջին յարձակումը գործեց Հոլանտացի բժիշկ մը, Նէլըն: Երկրորդը՝ Սենաք: Երրորդը՝ քիմիագէտ Փոլի, որ իր քննադատութիւնը հասցուց անպատկառութեան աստիճանին: Եւ այնուհետեւ բժշկութեան պատմութեան հեղինակները իւրացուցին ու կրկնեցին նոյն քննադատութիւնները՝ առանց ... կարդալու Գէորգ Հայկազնը, ինչպէս է սովորութիւնը:

Արդ, այժմ կը հաստատուի թէ յիշեալ գիրքը գործն է... Քասալինի բժիշկին, եւ ոչ երբեք Գէորգ Հայկազնի: Սկիզբը ըսի թէ հայ երիտասարդ բժիշկը հիացող մըն էր Հիպոկրատի, համակիր՝ humorismeի, ուրեմն հակառակ solidismeի:

(Մնացեալը յաջորդով) Տ. ՆԱՐԴՈՒՆԻ

(*) Մահացու հիւանդութիւն մը կայ, որ կը կոչուի ածխախտ (charbon),— կենդանիներէն կը փոխանցուի մարդոց: Դժուար է բուժել, շա՛տ կը մեռնին կենդանիները այս հիւանդութեամբ՝ երբ վարակուին: Հաւը չի վարակուիր, սակայն: Ածխախտին մանրէն կերցուցէք, հաւին հոգն անգամ չէ: Ջուրը դրէք հաւին ոտքերը,— անմիջապէս կը վարակուի: Վարակուելէն ետք, մեռնելու դատապարտուած պահուն, չորցուցէք ոտքերը, եւ հաւը կ'առողջանայ:

Մեր մարմնոյն մէջ եւս՝ ի՛նչ ուժեր կան, որոնց աղբիւրը գտնելով՝ կրնանք հրաշքներ գործել անպայման:

## ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

# Եւրոպայի բանալին

Միջերկրական ծովը՝ ինչպէս իր պատմութեան բովանդակ ընթացքին, այսօր ալ կը հանդիսանայ աշխարհի քաղաքականութեան առանցքը: Արեւելքի եւ Արեւմուտքի միացման կիծն է ան: Իր 2200 մղոն տարածութեամբ կ'իշխէ Ճիպրալթարէն մինչեւ Սուէզ, միացնելով Եւրոպան Ափրիկէի: Անոր ափերուն վրայ կը բնակին տասնըեօթ ազգեր, բարդաւաճ բնութեան պարգեւած բարիքներով: Ան բանալին է Եւրոպայի:

Այս բոլորէն յետոյ պարզ է հետեւցնել թէ՝ ինչու համար Միջերկրականը կը կազմէ աշխարհի դիւանագիտութեան առանցքը, թատերավայրը եղբայրասպան կռիւներու, պետական հարուածներու քաղաքային ու զինուորական թափանցումներու:

Միջերկրականի բանալին իր ձեռքերուն մէջ ամուր բռնած էր Մեծն Բրիտանիան, մինչեւ վերջին Աշխարհամարտը, շնորհիւ իր վիթխարի նաւատորմին: Եւ դաշինքներ կնքելով միջերկրականեան պետութիւններու հետ, ապահովելով անոնց պաշտպանութիւնը: Այսպէս պաշտպանելու համար նաեւ իր անսահման կայսրութիւնը, մինչեւ հեռաւոր Հնդկաստան, Ափրիկէ:

Ի զուր չէ որ Մուսոլինիի օրով Իտալացիները, արդարացնելու համար իրենց ծաւալողական քաղաքականութիւնը, Միջերկրականը կը կոչէին «Մեր Ծովը»:

Առանց հաստատուն վիճակի մը Միջերկրականեան աւազանին մէջ, կարելի չէ ո՛չ ազգերու ինքնորոշում, ոչ համաշխարհային առեւտուր եւ ոչ ալ խաղաղութիւն:

Երկրորդ աշխարհամարտէն ի վեր փոխուած են դերերն ու դիրքերը: Միջերկրականեան երկիրներէն ոմանք, մասնաւորաբար պալքանեան պետութիւնները, որոնք նախապէս կը դառնային Արեւմուտքի շուրջը, հիմա հարկադրաբար մտած են Խ. Միութեան տիրապետութեան տակ: Եւ դարաւոր երազը ցարական Ռուսիոյ վարիչներուն,— մտնել տաք ջուրերը— այսօր շատ աւելի լրջօրէն կը հետապնդուի եւ իրականութիւն կը գտնէ բոլշեւիկ Ռուսիոյ վարիչներուն կողմէ: Ատոր համար անոնք ունին հաստատուն կռուաններ:

Միջերկրականի տիրելու համար անհրաժեշտ է ունենալ ուժեղ նաւատորմ: Անգլիան, ինչպէս ըսինք, թէեւ տակաւին որոշ չափով մը այդ ջուրերուն մէջ կը պահէ իր գերազանցութիւնը, չունի սակայն երբեմնի գերակշիռ դիրքը: Այժմ ստեղծուած է ուժերու տարբեր դասաւորում: Արեւելեան եւ Արեւմտեան մրցակցութիւնն է, որ ինչպէս միշտ կը գործէ, այս անգամ իբրեւ գլխաւոր դերակատար ունենալով՝ մէկ կողմէ Խ. Միութիւնը, միւս կողմէ Մ. Նահանգները: Երկու ահաւոր ու հակոտնեայ աշխարհներ, որ տենդագին աշխատանքի են լծուած, յանուն աշխարհի խաղաղութեան: Ստուերին մէջ տնտեսական շահերը եւ ինքնապաշտպանութիւն, ընդդէմ մէկ կամ միւս աշխարհակալութեան: Գոյութեան պայքար:

Դժբախտ մարդկութիւն: Ճակատագրական դասաւորում փոքր ազգերու, որոնց սրտին ու մտքին վրայ կախուած կը մնայ դամոկլեան սուրը, պատրաստ մխուելու, փոքրիկ ընդվզումի մը պարագային: Կը թուի թէ աշխարհը այսքան չէր ստրկացած, չէր կորսնցուցած իր առնական խոյանքը, որքան մեր օրերուն: Եւ այս շնորհիւ վարդապետութեան մը, որուն նշանաբանն է «ճնշուած ժողովուրդներու ազատութիւնը»:

Նախկին երանելի օրերուն ալ ժողովուրդները կ'ունենային թիւրիմացութիւններ, սահմանային վէճեր, պատերազմներ, սակայն կարելի կ'ըլլար սահմանափակել աղէտը՝ չէզոք պետութիւններու միջամտութեամբ, կամ իրաւախոհութեան հրաւիրելով կռուող կողմերը: Մինչդեռ հիմա Միացեալ Ազգերու կազմակերպութիւնն անգամ մատնուած է անզօրութեան, եւ կը գործէ Խ. Միութեան չարաբաստիկ վեթօն:

Դիրքերը գրաւուած են արդէն: Ամենօրեայ մամուլը կ'արձանագրէ չնդալից մանրամասնութիւններ: Անխուսափելի՞ է բախումը: Ատոր պատասխանը վեր է մեր հասողութենէն եւ դուրս՝ մեր նիւթէն: Ամէն պարագայի մէջ, հրատապ հանգամանք ունի Միջերկրականի տիրապետութեան խնդիրը, Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ:

Խ. Միութիւնը իր Սեւ ծովեան ափերը պատնիշած է արբանեակ Ռումանիայով եւ Պուլկարիայով: Շնորհիւ այդ խարիսխներուն կը ձգտի թափանցել Միջերկրական:

Ատոր հետեւանքներն են Նեղուցներու վէճը Թուրքիոյ հետ, Ալպանիոյ գրաւումը, Եուկոսլաւիոյ դէմ սարքուած պայքարը, Թրիէսթէի խնդիրը, Յունաստանի աւելի քան երկու տարի տեւող եղբայրասպան կռիւները: Նոյն նպատակին կը ծառայեն Ֆրանսայի, Իտալիոյ եւ հիւսիսային Ափրիկեան երկիրներուն մէջ սարքուած համայնավարական պարբերական խլրտումները, Սպանիան սանձելու առաջարկները, եւն. եւն.:

Խ. Միութիւնը կ'ընէ այս բոլորը, վստահ ըլլալով որ անգամ մը իր ձեռքերուն մէջ առնելէ վերջ Միջերկրականի տիրապետութիւնը, պիտի թափանցէ արեւմտեան Եւրոպայէն ալ անդին, ճամբայ պիտի բանայ Հնդկաստանի գաղափարական գրաւման: Պիտի խեղդէ ու գրաւէ արեւմուտքի քարիւղը՝ այնքան անհրաժեշտ ազատ ազգերու ճարտարարուեստի զարգացումին համար: Եւ վերջապէս իր ծովային ուժը պիտի դարձնէ դէպի Ատլանտեան ու Խաղաղական Ովկիանոսները:

Արեւմուտքը ի՞նչ միջոցներով կրնայ հակազդել համայնավարներու այս սադրանքներուն:

Ամերիկեան թերթի մը աշխատակիցը ընդարձակ յօդուածաշարքով մը կը թուէ այն հակամիջոցները, որոնք կրնան ի դերեւ հանել Խ. Միութեան մտադրութիւնները:

Ամենագլխաւորն է մշտական ներկայութիւնը կարեւոր նաւատորմիղի մը Միջերկրականի աւազանին մէջ: Անոր ներկայութիւնը հոգեբանական ազդեցութիւն պիտի գործէ Միջերկրականի ազատ երկիրներուն վրայ, եւ քաջալեր պիտի հանդիսանայ պահելու իրենց անկախութիւնը: Անոնք կը խորանան իրենց համոզումին մէջ, թէ Մ. Նահանգներու կառավարութիւնը երբեք թոյլ պիտի չտայ որ աշխարհը գրաւուի բոլշեւիկներու կողմէ:

Նոյն վստահութիւնը նաեւ տարբեր երկիրներու հայրենասէր բնակիչներուն վրայ, որոնք նոր ուժ ու կորով պիտի ստանան՝ բարձր բռնելու համար իրենց ազգային դրօշը:

Այս կերպով կը յուսան սանձել յարձակողական ախորժակները, ինչպէս տեղի ունեցաւ Յունաստանի քաղաքային կռիւներուն ատեն, վկայութեամբն իսկ դերի բռնուած յոյն ապստամբներու:

«Ակներեւ է որ մեր մարտանաւերը մէկ մէկ փուշ են, մխուած համայնավար տենչանքներու կողերուն վրայ»: Ու ամերիկացի մասնագէտ յօդուածագիրը կ'առաջարկէ՝ շարունակել Թուրքիոյ եւ Յունաստանի տրուած նիւթական եւ զինուորական օժանդակութիւնը, Սպանիան եւս առնել Ատլանտեանի դաշինքին մէջ, օդանաւային կայաններ հաստատել հիւսիս. ափրիկեան ափերուն վրայ, ինչպէս եւ սերտ գործակցութիւն Իտալիոյ եւ Ֆրանսայի զինուորական ուժերուն միջեւ:

Ըստ յօդուածագրին, Միջերկրականը 1946 Սեպտ.էն մինչեւ այսօր պաշտպանուած է, շնորհիւ Ամերիկայի 6րդ նաւաբաժնին, որուն հրամանատարն է ծովակալ Գոնըլլի, ցամաքային սպայակոյտի կեդրոն ունենալով Լոնտոնը:

— «Անցան տագնապալից պահերը Իտալիոյ, Յունաստանի, Թուրքիոյ եւ հիւսիսային ափրիկեան ափերուն: Այս յաղթանակին կարեւոր մէկ մասը կը պարտինք 6րդ նաւաբաժնի «գորշ դիւանագէտներուն»: Ասոնց վրայ աւելցուած նոր մարտանաւեր, զօրացած օդային ու ցամաքային ուժերով, պիտի կրնան բաց պահել Կապոյտ Ծովը»:

Ա. ՀԱԲԻԼԵԱՆ




ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

**HARATCH**

Fondé en 1925
R. C. S. 376.286

Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13)
Վեցամս. 800 փր., Տար. 1600, արտ. 2500 փր.
Tél. GOB. 15-70 Գին 7 փր. C.C.P.Paris 1678-63
Dimanche 2 JUILLET 1950 Կիրակի 2 ՅՈՒԼԻՍ

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6193–Նոր շրջան թիւ 1604

Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

## Ի՞ՆՉՊԷՍ ԹԵՒ ՏԱԼ

Կարելի՞ է թեւ տալ գրողին եւ գրքին, ստեղծագործական աշխատանքին եւ հրատարակութեանց սպառման, ձեւափոխելով «Հայ Գրագէտներու Բարեկամները»: Կամ նոր Հրատարակչական մը կազմելով :

Ընենք անմիջապէս թէ չունինք որեւէ կանխակալ կարծիք: Պարզապէս ելք մը գտնել կ'ուզենք, ի տես համատարած անշարժութեան :

Անգամ մը եւս կը յիշեցնենք,— « Եթէ քանի մը տարի ալ այսպէս շարունակուի, շատ մը հեղինակներ պիտի նախընտրեն գուլպայ կամ ձիթապտուղ ծախել » :

Այն ատեն, մեր ներկայ մշակոյթն ալ պիտի դառնայ հեռաւոր, աղօտ յիշատակ մը : Պիտի սնանինք դամբարաններով եւ հնոտի նշխարներով:

Ի՞նչ ընել, վտանգը կանխելու համար:

Դնելով նոր Հրատարակչականի մը առաջարկը, դասական իմաստով չենք ըմբռներ զայն :

Գիտենք որ միշտ ալ գիրքեր պիտի տպուին այստեղ եւ այլուր, Հրատարակչական Ընկերութիւն մը ունենանք թէ ոչ :

Մեր հիմնական հոգն է՝ աշխուժացնել ստեղծագործութեան եւ հրատարակութեան, այլ մանաւանդ գիրքերու տարածման գործը :

Դեռ աւելի մանրելով, կ'առաջարկենք միջոցներ մշակել, վերահաստատելու համար գնելու եւ կարդալու վարժութիւնը :

Արդարեւ, այդ վարժութիւնն է որ հետզհետէ կը թմրի, կը նահանջէ: Նոյն իսկ երէց սերունդին մէջ :

Տեղի – անտեղի կը պարծենանք իբրեւ «ընթերցասէր հասարակութիւն » :

Անողոք իրականութիւնն այն է որ, շատ քիչերը կը կարդան: Մեծ մասն ալ կը բաւէհաճի կարդալ... փոխ առնելով: «Սանկ աչք մը նետելու համար»:

Հարեւանցի քննութիւն մը կատարեցէք ձեր նեղ շրջապատին, ազգականներու, բարեկամներու եւ ընկերներու շրջանակին մէջ, եւ պիտի տեսնէք որ... Պոլսէն ալ ետ մնացած ենք :

Եթէ միայն կարդալ – գրել գիտցողները իրենց խիղճը քննէին, պիտի կարմրէին:

Եթէ քիչ մը նախանձախնդրութիւն ունենային, այսքան արտասուելի վիճակ մը պիտի չներկայացնէր հայերէն հրատարակութեանց շուկան:

Ինչ որ իբրեւ պատճառաբանութիւն կը ցուցնեն, յաճախ պարզ պատրուակ է , պարտկելու համար անպարտկելի մեղքեր :

Մեր ըմբռնած Հրատարակչականը — կամ ուրիշ կազմակերպութիւն մը — ամէն բանէ առաջ պիտի ըլլար գործօն մարմին մը: Շարժուն եւ բազմանդամ :

Իր պարտականութիւնները պիտի ըլլային.—

Դառնալ բանուկ շաղկապ մը հեղինակին , հրատարակիչին եւ հասարակութեան միջեւ, ապահովելու համար հայ գրքին տարածումը :

Այդ առաջադրութեամբ, անդամներէն իւրաքանչիւրը յանձն պիտի առնէր 5—10 նոր հրատարակութիւն սպառել իր շրջապատին մէջ: Համաձայն իր ապրած միջավայրին եւ ապարէզին :

Իւրաքանչիւր անդամ պիտի հետաքրքրուէր , նոյնիսկ պիտի հետապնդէր, որպէսզի տարին քանի մը հատոր հայերէն գիրք մտնէ իր ծանօթներուն տունը:

Ուրեմն ամէն անդամ պիտի դառնար տեսակ մը վկայ: Հաւատաւոր եւ գործօն միջնորդ:

Ամէն օր կը տեսնէք թէ ի՛նչ հնարքներ կը մտածեն կրօնական ընկերակցութիւններ, նոյնիսկ Աւետարան եւ Աստուածաշունչ ծախելու համար, փողոցէ փողոց :

Ձեզմէ չի պահանջուիր դիրք բռնել փողոցին անկիւնը կամ ժամուն դուռը, օգնելու համար հայ գրքին տարածման :

Սակայն, ձեր պարտականութիւնն է միշտ յիշել եւ յիշեցնել թէ՝ այս անգամ պատասխանատուն մենք պիտի ըլլանք, եթէ մշակոյթն ալ ծիւրի եւ ցամքի, դառնալով տեսակ մը թանգարան:

Առաջարկուած կազմակերպութիւնը անշուշտ ինքն ալ հրատարակութիւններ պիտի ունենայ : Պիտի գտնէ նաեւ միջոցներ՝ սուղ գիրքերը մատչելի դարձնելու, կամ հանրամատչելի հատորներ հրատարակելու համար :

Այդ խնդիրն ալ պիտի արծարծենք, ուրիշ տեսակէտներու հետ : Շ.



ԸՆԿԵՐ ՎԱՀԱՆ ՀԻՒՍԻՍԵԱՆ
Շ. Գարահիսարի 1915 Յունիսի հերոսամարտին ղեկավարներէն :
(Այսօրուան յիշատակի տօնին առթիւ)

## ՕՐԸ ՕՐԻՆ

### ՄՈՌՑԵՐ ԷԻՆ ՈՐ...

Յաճախ « նորեր»ը կը գանգատին թէ նախաձեռնութիւն չի տրուիր իրենց որեւէ կազմակերպութեան համար: Թէ հինները իրենց քիթը ամէն բանի մէջ կը խօթեն եւ թոյլ չեն տար որ երիտասարդները «իրենց տունը իրենք կառավարեն »:

Ըլլալով «հիներ»էն, կ'ուզեմ քանի մը խօսք ըսել այդ կարգի մեղադրանքներու դէմ, որոնք եթէ երբեմն արդար են, շատ անգամ ալ անիրաւ են եւ անտեղի :

Անշուշտ սրտի շատ մեծ գոհունակութեամբ չէ որ մեծերը կը խառնուին, իրենց ըսածին պէս, «ամէն բանի»:

Շատ անգամ տաղտուկ է ստանձնել գործեր եւ պատասխանատուութիւններ, որոնք կրնան կարգադրուիլ, եթէ երիտասարդներուն քով չպակսին անհրաժեշտ լրջութիւնը եւ գիտակցութիւնը:

Այս ընդհանուր տեսութենէն վերջ, պատմեմ անախորժ տեսարան մը որու մասին տրտունջներ հասած են խմբագրութեան :

Մուրատեան վարժարանի նախկին աշակերտները հանդէս մը կազմակերպած էին անցեալ կիրակի, դպրոցին պարտէզին մէջ, որ տրամադրուած էր իրենց, ինչպէս եւ թատերասրահը :

Անշուշտ ոգի ի բռին աշխատած էին այդ տղաքը, ապահովելու համար լաւագոյն հաջողթը:

Ուզելով գեղարուեստական բաժնին ալ «սովորական»էն դուրս, բացառիկ հանգամանք տալ, կազմած էին յայտագիր մը յունական եւ սպանիական երգերով եւ պարերով :

Պիտի ըսէք,— «ուրեմն բան չեն մոռցած եւ ամենայն ինչ կատարեալ էր ...»

Դժբախտաբար մոռցուած բաներ կային :

Առաջին՝ մոռցեր էին որ Մուրատեան վարժարանը «Հայերու հաստատութիւն մըն է, կրօնական Միաբանութեան մը, Մխիթարեաններու տեսչութեան» տակ :

Մոռցեր էին որ մանուկներ եւ պատանիներ ներկայ պիտի ըլլան հանդէսին:

Մոռցեր էին որ Վենետիկի ընդհ. Աբբահայրը, Սրապիոն գերապայծառ, կաթ. պատուիրակ Արտաւազդ արք. եւ վարժարանին բոլոր վարդապետները առաջին նստարաններուն վրայ պիտի ըլլան, յարգելու համար իրենց հանդէսը :

Մոռցեր էին վերջապէս որ իրենք ալ պարտաւոր էին յարգել զանոնք: ՍՕՍԻ

## ՔՈՐԷԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

### Մ. Նահանգները ցամաքային զօրք ալ ղրկեցին

ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ԾԱՆՐ Է.— ԹՐՈՒՄԸՆԻ ԵՐԵՔ ՀՐԱՄԱՆՆԵՐԸ.— ՔՈՐԷԱՆ ՊԻՏԻ ՊԱՇԱՐՈՒԻ.— ԱՄԵՐԻԿԵԱՆ ԲԱՆԱԿԱՏԵՂԻՆ ԱՅԼՈՒՐ ՓՈԽԱԴՐՈՒԵՑԱՒ.— 26 ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ ԽՈՍՏԱՑԱՆ ԱՋԱԿՑԻԼ.— ԱՆԳԼԻԱ ԵՒՍ ԴԻՄԵՑ Խ. ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐՊԷՍԶԻ ՄԻՋԱՄՏԷ :

Նախագահ Թրումըն հաստատեց թէ հաւանած է որ.—

1) Մ. Նահանգներու օդատորմիղը յատկապէս զինուորական գործողութիւններ կատարէ հիւսիսային Քորէայի մէջ, ամէն անգամ որ անհրաժեշտ համարուի: 2) Ամերիկեան նաւատորմը խիստ պաշարում հաստատէ Քորէայի ամբողջ ծովեզերքին վրայ: 3) Կարգ մը ցամաքային զօրամասեր միջամտեն, համաձայն զօր. Մէք Արթըրի առաջարկին, ետ մղելու համար հիւսիսային Քորէայի զօրքը :

Աւելորդ է բացատրել այս որոշումներուն ծանրակշիռ հանգամանքը: Ինչպէս դիտել կուտան մասնագէտներ, առաջին անգամ է որ ամերիկեան կառավարութիւնը կ'ընդունի հիւսիսային Քորէայի սահմանագծէն անդին անցնելու սկզբունքը, վճռական հարուած մը տալու համար:

Թօքիօյէն կը հեռագրեն թէ ուրբաթէն շաբաթ լուսնալու գիշերը, հիւսիսային Քորէայի զօրքը գրաւեց ամերիկեան բանակատեղին, Սուվօն քաղաքը եւ օդակայանը, Սէուլէն 30 քիլոմեթր դէպի հարաւ: Նոր բանակատեղին հաստատուեցաւ Թաժոնի մէջ, 93 մղոն դէպի հարաւ: Ամերիկեան հրամանատարը, զօր. Ջըրչ, յայտարարեց այս առթիւ.— «Աւելի ետ պիտի չերթանք: Շուտով պիտի վերադառնանք 38րդ զուգահեռականը»:

Հեռագիրը կ'ըսէ թէ վտանգուած բանակատեղին պարպելու հրամանը տրուեցաւ երբ հիւս. Քորէայի զօրքը խզեց Հան գետին ճակատը եւ յառաջ խաղաց հրասայլերով եւ հետեւակազօրքով: Հարաւ. Քորէայի ճակատը խորտակուած ըլլալով, զօր. Ջըրչ հրամայեց պարպել բանակատեղին: Գործողութիւնը տեւեց տասը վայրկեան: Նոր բանակատեղին, Թաժոն, 100.000 բնակիչ ունի եւ Սուվօնէն բաժնուած է բազմաթիւ գետակներով եւ մեծ գետով մը:

X Վերջին լուրերու համաձայն, ամերիկեան օդանաւերը անխնայ կը ռմբակոծեն հիւսիսային Քորէան: Ուրբաթ օր խորտակուեցան 15 թշնամի հրասայլեր: Պաշտօնական զեկոյցը կ'ըսէ թէ նոյն օրը 161 թռիչքներ կատարուեցան, մէկը՝ «թըռչուն-բերդերով»:

Ամերիկացի թղթակիցները կ'ըսեն թէ հիւս. Քորէայի հրասայլերը, որոնք ռուսական արտադրութիւն են, կը խորտակեն հարաւ. Քորէայի զօրքին բարոյական կորովը: Առաջին պարտութենէն եւ Սէուլի գրաւումէն վերջ, անձնասպանութիւն փորձեց հարաւ. Քորէայի հրամանատարը : Այժմ ուրիշ սպարապետ մը նշանակուած է:

X Ապահովութեան խորհուրդը նոր ժողով մը գումարեց ուրբաթ օր ,աւելի ազդու միջոցներ գտնելու եւ պատերազմը դադրեցնելու համար :

Ազգաժողովին անդամները հետզհետէ կը ճշդեն իրենց դիրքը: Եգիպտոսի վարչապետը, Նահաս փաշա, որ Աղեքսանդրիա կը գտնուի , պատասխանելով լրագրողներու հարցումներուն , յայտարարեց թէ որոշած են չէզոք մնալ: Այս իմաստով ծանուցագիր մը ղրկուած է Ազգաժողովին: Եգիպտոսի տեսակէտով, ներկայ ընդհարումը պարզապէս մէկ նոր երեւոյթն է արեւելեան եւ արեւմտեան ճակատներուն միջեւ մղուած պայքարին: «Մինչեւ հիմա նախայարձակման երեք դէպքեր պատահեցան, խախտելով Ազգաժողովի անդամներու գերիշխանութիւնը եւ չեղան այնպիսի տնօրինութիւններ որ այժմ կ'ըլլան Քորէյի մասին»: Կը հաւատեն թէ Եգիպտոս պիտի ճանչնայ խորհրդային Չինաստանը :

Շուէտ ալ չուզեր մասնակցիլ Ապահովութեան Խորհուրդին բանաձեւով նախատեսուած գործողութեանց: Կ'ըսուի թէ այս մերժումը պիտի յայտնէ անպատասխանի ձգելով Ազգաժողովի ընդհ. քարտուղարին նամակը :

Քանատայի արտաքին նախարարը յայտարարեց թէ պատրաստ են մարտանաւեր ղրկելու անմիջապէս, եթէ անհրաժեշտ համարուի: Պրազիլիա եւ Մեքսիկա եւս յանձն առին կատարել իրենց պարտաւորութիւնները, համաձայն Ազգաժողովի դաշինքին :

Անգլիա եւս խնդրեց Մոսկուայէն՝ միջամտել, կռիւը դադրեցնելու համար :

X Թօքիօյէն կը հեռագրեն թէ Ճափոնի մէջ կը վախնան նոր աշխարհամարտէ մը: Բազմաթիւ ընտանիքներ կը խորհին հեռանալ: Հազարաւոր երիտասարդներ ալ կ'ուզեն կամաւոր արձանագրուիլ :

X Անգլիացի հռչակաւոր գիտնականը, Պ. Րասըլ, շատ յոռետես կարծիքներ կը յայտնէ Քո–

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

# ՄԵՐ ԳՈՅՈՒԹԵԱՆ ՄԻՋՆԱԲԵՐԴԸ

Ֆրանսայի եւ Ամերիկայի հայ գաղութներու հանապազօրեայ մտահոգութիւնը նոր սերունդը հայ մեծցնելն է: Ոչ մէկ ուրիշ կարիք աւելի կշիռ կը ներկայացնէ: Նախ կեանք՝ յետոյ միայն այլ պահանջքներ: Եւ մեր այդ գաղութներուն համար Հայ մնալու խնդիրը կենաց – մահու խնդիր մըն է, որուն լուծում գտնելու հարկադրանքին տակ են ազգային կազմակերպութիւնները, թերթերն ու մտաւորական դէմքերը :

Ի՞նչ ընել որ Եւրոպայի ու Ամերիկայի մթնոլորտին մէջ Հայը չկորսուի. ինչպէ՞ս վարուիլ որ երիտասարդ հայ տղաքն ու աղջիկները պահպանեն իրենց ազգային դիմագիծն ու հոգին: Ո՞ր ազդակներն են ի զօրու: Ի՞նչ միջոցներով կարելի է լաւագոյն արդիւնքի հասնիլ:

Աւելի քան քառորդ դար է այս հարցումները սուր բնոյթ ստացած են, որովհետեւ հայկական տեղահանութիւններէն ասդին, արեւմտահայու – թեան վերապրող բեկորները ստիպուած են իրենց գոյութիւնը պահել օտար միջավայրերու մէջ :

Անցնող տարիներուն հետ անցնելու վրայ են նաեւ հին սերունդի ներկայացուցիչները, գաւառացի մամիկներն ու պապիկները: Այս անհետացումը նորահաս տղաքը անպաշտպան կը ձգէ այլասերման վտանգին դէմ առ դէմ: Եթէ երէկ տան մէջ հայերէն խօսող երկու հոգի կը գտնուէր, այսօր տունը ամայացած է հայ տոհմային շունչը վառ պահող անձերէ:

Կրկնակի դժուարութիւն կը ստեղծէ այս պարագան՝ հայապահպանման պայքարի մեր ճակատներուն վրայ :

Ծանօթ է նաեւ այն տխուր իրողութիւնը թէ Ամերիկայի եւ Ֆրանսայի մէջ կարելի չէ պահել կանոնաւոր հայ վարժարաններ, ուր հնարաւոր ըլլար հայ լեզուն սորվեցնել: Ժամը 4էն ետք, կարկտան ձեւով, հեռաւոր թաղի մը մէջ, հայերէնի մասնաւոր դասեր հաստատելով գրեթէ անկարելի է սերունդը պահպանել հայեցի ոգիով:

Ահա այս դժուարութիւններուն առջեւ, այլասերման չարիքներուն ամէն օր ականատես սրտցաւ Հայեր սկսած են յուսահատութեան ճիչեր արձակել: Ոմանք ալ հայ լեզուն որվեցնելու ճիգէն ձեռնթափ՝ հայապահպանման նոր լաստեր որոնելու փորձեր կը կատարեն :

Ցաւալի է անշուշտ, բայց կարելի չէ կոյր ձեւանալ՝ իրականութիւնը տեսնելէ խուսափելու համար:

Վերջերս տակաւին, « Ցառաջ »ի աշխատակիցներէն մէկը երկար յօդուածաշարքով մը անդրադարձաւ « ցեղապահպանման » այս ցաւոտ հարցին: Իր եզրակացութիւնը այն էր թէ « Հայերու միջեւ բարոյական իրերօգնութեան մթնոլորտ մը ստեղծելու է, դարերով փորձուած համահայկական միակ հաստատութեան՝ Հայ. Եկեղեցիի հովանիին տակ»:

Այս տեսակէտը կը միտի հայերէն լեզուի կեդրոնական սիւնը փոխարինել ուրիշ յենակներով՝ հայութեան շէնքը կանգուն պահելու համար: Ճիշդ այնպէս, ինչպէս Մ. Նահանգներու մէջ ըրաւ Տիրան եպիսկ. Ներսոյեան, «Հայաստանեայց Եկեղեցի» ամսագրին մէջ հրատարակած իր խմբագրականով :

Ուրեմն, ըստ այս տեսակէտը պաշտպանողներուն, Սփիւռքի մէջ հայ լեզուն դատապարտուած է կորսուելու եւ արդէն իսկ դարձած երկրորդական ազդակ մը հայապահպանման գործին: Որով՝ մեր փրկութիւնը պէտք է որոնել Հայ. Եկեղեցւոյ կամարներուն ներքեւ :

Չենք ժխտեր Եկեղեցիին մեծ դերը, որ դարեր շարունակ խոշոր նպաստ մը բերած է հայ ոգիի եւ արժէքներու գոյատեւման: Բայց այդ դերը ան խաղացած է ոչ թէ բացարձակ եւ ինքնաբաւ զօրութեամբ մը, այլ որպէս անօթ եւ աւանդատուն հայ դպրութեան, մագաղաթներուն լեզուին եւ գիրին :

Եթէ Հայաստանեայց Եկեղեցին պարպենք իր այս գանձատունէն, կը դառնայ զուտ կրօնաբարոյական հաստատութիւն եւ կը դադրի իր բազմադարեան դերը խաղալէ :

Մեր Ազգ. Եկեղեցին պարզ աղօթատեղի մը չէ եղած. մեր վանքերը միայն կուսակրօններու մենաստան չեն ծառայած: Եկեղեցիին շուքին տակ ծուարած են հայ վարժարանները եւ վանքերու խցիկներուն մէջ պահուած են մեր գրադարանները: Կրօնաւոր հայրերը եղած են նոյն ատեն պատմագիրներ եւ վարդապետներ՝ մայրենի լեզուի վարժապետներ :

Կարելի՞ է մեր շարականները ըմբռնել եւ Աստուծոյ հետ խօսիլ, առանց հայ լեզուն գիտնալու :

Ոչ, աւելորդ թափառումներ եւ վտանգաւոր մոլորանքներ են հայ լեզուի դերն ու արժէքը անտեսելը: Մեր վերածնունդի ռահվիրաներէն մինչեւ երէկուան նահատակ մեր մտաւորականները լեզուն նկատած են մեր գոյութեան միջնաբերդը:

## ԹՈՒՐՔ ՈՒՍՈՒՑԻՉ ՄԸՆ Է ՈՐ ԿԸ ՊԱՏՄԷ

# Մեր գիւղը.– Ե.

Մեր գիւղին մէջ, կօշիկ հագնող կիներուն թիւը հարիւրին հինգը չանցնիր: Մնացեալը ամբողջ բոպիկ է: Ձմեռն անգամ, ցեխին – ջուրին մէջ բոպիկ կը պտտին:

Աղջիկները բոկոտն են թէեւ, բայց իրենց գլուխներուն վրայ կը կրեն ահագին բեռ մը, — ծանր փէսեր, եմէնիներ, ծոպեր, զանակներ, ուլունքներ եւն.:

Ոտքեր, որոնք մարմնին մաս չեն կազմեր կարծես, աղտոտութեան մէջ կորսուած են, եւ ամառը արտերուն մէջ կը բզկտուին եւ կը ճաթռտին, եւ քար կը կտրին: Ի զուր չէ որ կիները կը տառապին մէջքի ցաւերէ :

Կարգուող աղջիկներուն տարիքը շատ անգամ տասնըհինգէն վար է: Խեղճ աղջնակը դեռ աշխարհի գործերուն խելքը չհասած՝ էրիկ մը կը տեսնէ իր դէմ: Եւ երկու տարի վերջ կ՚ընկճուի ու կ՚իյնայ :

Հազիւ թէ հարս եղած, կը հիւանդանայ եւ կ՚իյնայ անկողին. քանի մը տարի կը գամուի անկողնին եւ կը մեռնի: Այսպիսի մահեր շատ կը պատահին, այսպիսիներու համար մխիթարական բանաձեւ մը գտած են.— « Արդէն հիւանդ էր, կարգուեցաւ եւ հիւանդութիւնը բոլորովին մէջտեղ ելաւ»:

Մանչ կողմին համար կարգուիլը կատարեալ փլուզում մըն է: Անասուն ծախելու պէս դրամներ կը պահանջուին հարսնցուին համար : Հազար ոսկիէն դուռ կը բանան, եւ հինգ վար հինգ վեր կը համաձայնին :

Իսկ անոնք որ այս դրամը չեն կրնար տալ, « հոտած » կը կոչուին եւ մարդ երեսը չի նայիր եւ աղջիկ չի տար անոր: «Հոտած» մակդիրէն ազատելու համար, փեսացուին ծնողքը մինչեւ կոկորդը պարտքի տակ կը մտնէ, եւ պահանջուած դրամը հայթայթելով՝ տուրքը կը վճարէ եւ կ՚ազատի :

Անոնք որ չեն յաջողիր, դատապարտուած են ամուրի մնալու :

Օրինակ մը յիշեմ ձեզի.— Ծանօթ ընտանիք մը ունիմ, Զընըրները, չորս եղբայր մէկ տան մէջ կ՚ապրին. իրենց հայրը մեռաւ: Արիւն – քրտինք կը թափեն ամէն օր, կ՚աշխատին,, իրենցմէ երկուքը, ամէնէն տարիքոտները, կարգուած են, բայց կրտսերները, մէկը 32, միւսը 28 տարու, ամուրի են :

Տասնոց տասնոցի վրայ պէտք է դնէին, չեն դրեր, եւ չեն կրնար ամուսնանալ :

Ամէնէն մեծը երեք մանչ ունի, 19, 23 եւ 26 տարու: Ամէն դուռ զարկին, եւ այս ընտանիքին վեց ամուրիները, որոնց կարգուելու տարիքը անցած է շատոնց,— չկրցան կնիկ մը գտնել իրենց. այս ընթացքով ամուսնանալիք ալ չունին :

Իրենց պատմութիւնը բերնի ծամոց եղած է, եւ ամէն մարդ գիտէ թէ աղքատութեան երեսէն ամուրի մնացին:

Գիւղին մէջ ոգնիի խաղ մը կայ սասնկներուն համար: Մարդուն մէկը լաթերու մէջ փաթթուած՝ ոգնի կ՚ըլլայ, միւսներն ալ երգ մը կ՚ըսեն: Եթէ երգը հաճոյ թուի իրեն, ոգնին ձեռքերը վերցնելով կը սկսի խաղալ. եթէ դժգոհ մնայ, քիթը կը կախէ եւ չի խաղար: Երգն ալ սա է. — Չընըրներէն խնամի է եկեր, կ՚առնե՞ս մի, ոզնի ջան, կ՚ուզե՞ս մի, ոզնի ջան :

Ոզնին անշարժ կը մնայ :

Թողունք սակայն ամուրիները, եւ անդրադառնանք ամուսնացեալներու վիճակին: Տղայ տարիքի մէջ, գրեթէ մանուկ ըսուելու չափ տարիքի մը մէջ կը կարդեն զաւակները, ան ալ չի գիտեր կնկան եւ ամուսնութեան իմաստը, կը նիհարնայ, կը դեղնի ու կը մաշի: Ինչ ընել, սովորութիւնը այս է, եւ պէտք է յարգել սովորութիւնը:

Տարիներ կ՚անցնին, եւ ամուսնացած մարդը իր մէկ սիրած աղջիկը եւ կամ կնիկը տուն կը բերէ իբրեւ հարճ, իր հինն ալ անհաճոյ կը թուի այլեւս իրեն եւ զայն ճամբու կը դնէ: Եւ կամ զայն ի պահ կը դնէ իր քով, խորհելով որ աւելորդ դրամը գրպանը չի ծախեր:

Արդէն քաղաքային ամուսնութեան վրայ գաղափար չունին եւ բոլորն ալ կ՚ամուսնանան իմամի նիքեահով:

Անոնք որ երկրորդ կնիկ մը տուն կը բերեն, քանի մը ղրուշ ունեցողներն են. իսկ անոնք որ անկուտիներու ընտանիքին կը պատկանին, տարբեր փափաքներ չեն ունենար, եւ «բախտս այս է եղեր» ըսելով՝ իրենց առաջին կնկան հետ կը ծերանան կ՚երթան :

Աղքատ մարդ մը երբ այրիանայ, դարձեալ չի կրնար ամուսնանալ, քանի որ դրամ չունի: Իրեն համար նոր ամուսնութիւն մը աներեւակայելի ցնորք մըն է. իսկ եթէ մեռնողը այր մըն է եւ որբեւայրի, կնիկն ալ տակաւին երիտասարդ, անպատճառ կարգուելու կը հանեն զինքը: Կ՚ուրախանան նոյնիսկ իր այրիացումին համար:

Ամուսնութիւններու այս անխելք կանոնները պատճառ կ՚ըլլան որ ծնունդները նուազին եւ մահերը շատնան :

ՄԱՀՄՈՒՏ ՄԱԳԱԼ

---

Մինչեւ վերջին շունչ ամէն Հայու պարտականութիւնն է, պահպանել լեզուն եւ փոխանցել իր ժառանգներուն, հոգ չէ թէ վիրաւոր վիճակի մէջ :

Անփոխարինելի արժէք է լեզուն եւ անգնահատելի հարստութիւն: Հայ ոգիի իսկութիւնն իսկ դարերու հոլովոյթով խտացած է անոր մէջ: Անմահութեան ակնաղբիւրն է ան, որուն ջուրերը շատ խորերէն եւ շատ հեռուներէն կուգան :

Ոչ մէկ տատամսում եւ ոչ մէկ ընկրկում թող չհեռացնէ մեզ մեր մեծասքանչ բարբառէն: Դժուարութիւնները կ՚անցնին բայց լեզուն կը մնայ յաւերժական իր թաւալումին մէջ:

(Խմբագրական «ԱԶԴԱԿ»ի)

# Մեր մարզանքը

Մարզական միութիւնները միշտ ալ իրենց արժանի տեղը ունեցած են: Հին, հին դարերուն հռոմէական, յունական եւայլ կրկէսներն ու հրապարակային մարզանքներն ու մրցումները քաջութեան, յանդգնութեան, ուժի եւ մկաններու ցուցադրութեան վայրեր էին: Հին Հայոց մէջ Նաւասարդեան տօներուն, ժողովուրդի ընտրանին էր որ հրապարակ կուգար, ըմբիշը իր բազուկներուն ուժը կը ցուցադրէր, գուսանները քաջերու գովքը կը հիւսէին, ժողովուրդը ոգեւորելով ու տօնախմբութեան աւելի մեծ փայլ մը տալով :

Երիտասարդը միշտ ալ սիրած է ազատ բնութիւնն ու խաղը: Ի՞նչ աւելի հաճելի քան բացօթեայ զուարճանքը: Օտար ափերու լպրծուն մայթերն ու հաճոյավայրերը որքան հոգիներ կը տրորեն, կը լուծեն : Վա՜յ այն հաւաքականութեան որ աչքը բաց կը քնանայ, թոյլ տալով որ նորածիլ սերունդը սայթաքի: Քանի, քանի հազարներ հիւանդանոցներու, հանգստեան կայաններու մէջ օրէ օր կը հիւծին ահաւոր տառապանքներով :

Այս մատղաշ հոգիներու փրկութեան միակ միջոցը, մարզական կազմակերպութիւնները կրնան գտնել: Ամէն տարի տասնեակ հազարներով նորաբոյս պատանիներ կը փրկուին մարզանքով:

Հայն ալ երբ Նաւասարդեան տօներու հարազատ աւանդապահ, հաւատարմօրէն կը հետեւի իր նախնիքներուն գծած ուղիին, ներշնչուելով իր պապերուն հրաշափառ անցեալէն:

Վաղը, կիրակի, երկու տարեկան Փարիզի Հ. Մ. Մ.ը միշտ բարձր բռնած «Բարձրացիր, բարձրացուր»ի նշանաբանը՝ ցոյց պիտի տայ հանրութեան՝ անվերապահ գոհողութեանց արդիւնքը:

Արդէն իր առաջին տարուան ախոյենական մրցումներուն մէջ լաւագոյն տեղը գրաւեց, երկրորդ հանդիսանալով իր դասակարգին եւ արժանացաւ դասակարգի բարձրացման:

Համեստ են իրենց միջոցները, դժուար են պայմանները: Անհրաժեշտ է աչալուրջ աշխատանք, յարատեւութիւն եւ կորով: Բարեբախտաբար հայ ժողովրդի ջախջախիչ մեծամասնութիւնը, առողջ է եւ իրատես, անձնուէր: Ու այս անզուգական առաքինութեան շնորհիւ կրցած է համաշխարհային չափանիշով հիմնարկութիւններ ստեղծել, ինչպէս հիւանդանոցներ, դպրոցներ, [illegible]եմարաններ եւայլն: Նոյն շինարար եւ զոհաբերող ոգին կը տեսնենք այսօր ալ:

Այս համայնակուլ միջավայրին մէջ, ամէն Հայու սրբազան պարտականութիւնն է հոգեւին փարիլ ազգապահպանման գործին, թեւ ու թիկունք հանդիսանալ երիտասարդութեան, որպէսզի աւելի եռանդով նուիրուի մարզանքի, ցեղին կրակը վառ պահելու համար :

Մեզի կը մնայ բարձրացնել իրենց դիմադրական կորովը, որպէսզի աւելի ամուր կապուին հայութեան, դառնալով արժանաւոր յաջորդները ստեղծագործ Արմէններուն :

Ց. ՀԻՍԱՑԵԱՆ

Հանդիսավայր.— Stade Olier, կիրակի ժամը 9 — 21 :

---

## ՍՏԱՑԱՆՔ

ՏԱՐՕՆ (Հաւաքածոյ ժողովրդական երգերու): Հաւաքեց եւ կազմեց՝ Արտաշէս Տէր Խաչատուրեան: Պէյրութ, 1950: Գին մէկ տոլար: Հասցէ.— Karm el Zeytoun, No. 23 Achrafié, Beyrouth (Liban):

դելով Քորէայի գործողութեանց մասին: Իր կարծիքով, կարելի չէ յաղթել առանց բաւարար ուժ եւ զինամթերք ապահովելու: Հիւս. Քորէացիները պատերազմը սկսած են 90.000 — 100 հազար զինուորներով, որոնք բաժնուած են եօթը զօրաբաժիններու եւ սպառազինուած՝ խորհրդային ընտիր զէնքերով: Հարաւ. Քորէացիները ունէին միայն չորս զօրաբաժին: Արշաւանքը նախապատրաստուած էր մեծ ուշադրութեամբ :

## Ատլանտեանի զինակիցներուն ժողովը

Ատլանտեանի զինակից պետութեանց արտաքին նախարարներուն փոխանորդները կը շարունակեն քննել զանազան ծրագիրներ, Լոնտոնի մէջ, արեւմտեան Եւրոպայի պաշտպանութեան համար: Իրենց գլխաւոր աշխատանքը պիտի ըլլայ գործնական ծրագիր մը մշակել, ներկայացնելու համար արտաքին նախարարներու խորհուրդին, որ պիտի գումարուի յառաջիկայ Սեպտեմբերին :

Առաջին պաշտօնական զեկոյցը կ'ըսէ թէ փոխանորդները համաձայնեցան տեղեկութիւններ չհաղորդել իրենց որոշումներու եւ կատարուած վիճաբանութեանց մասին, նկատի առնելով ապահովութեան պահանջը: Ուստի որեւէ զեկոյց պիտի չհրատարակուի խրաքանչիւր նիստէ վերջ: Բայց կարելին պիտի փորձեն, լուսաբանելու համար հանրային կարծիքը :

Ժողովականները միեւնոյն ատեն որոշած են փութացնել իրենց աշխատանքները: Այս առաջադրութեամբ, ճառերը կամ բանաձեւերը պիտի չթարգմանուին, ֆրանսերէն ըլլան թէ անգլերէն:

× Ֆրանսայի Ազգ. պաշտպանութեան նախարարը, Ժիւլ Մոք, Լոնտոն երթալով, տեսակցութիւն մը ունեցաւ իր անգլիացի պաշտօնակիցին՝ Պ. Շինուէլլի եւ ամերիկեան պատուիրակին հետ, որ կը նախագահէր առաջին ժողովին: Այս վերջինը իր բացման ճառին մէջ յիշեցնելով Քորէայի պարագան, չեշտեց թէ Ատլանտեանի զինակիցները պէտք է արթուն մնան, նոր անակնկալի մը չհանդիպելու համար :

× Գերմանիոյ վերազինման խնդիրը միշտ կ'արծարծուի: Մ. Նահանգներուն մէջ համաձայն են սահմանափակ վերազինման: Միակ արգելքն է Եւրոպայի, մասնաւորապէս Ֆրանսայի ընդդիմութիւնը : Այս առթիւ իրազեկներ դիտել կու տան թէ Ֆրանսա ուժգնօրէն ընդդիմանալով հանդերձ վերազինման, համաձայն է որ արեւմտեան Գերմանիոյ արտօնութիւն տրուի աւելցնելու պողպատի արտադրութիւնը եւ զէնքեր շինելու Դաշնակիցներուն համար :

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵԼԺԻՈՅ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ հետզհետէ կը ծանրանայ, իրրեւ հետեւանք Լէոփոլտ Գ.ի վերադարձին: Երեքշաբթի օր ոչ միայն գործադուլներ սարքուեցան, այլեւ երկաթուղիներ խորտակուեցան զանազան կէտերու վրայ, նոյնիսկ Պրիւսէլի մօտ: Նոյն օրը հինգ ռումբեր գտնուեցան Պրիւսէլ – Փարիզ գծին վրայ: Բարեբախտաբար չէին պայթած: Ներքին նախարարութիւնը 30 դէպքեր կը ծանուցանէր 12 ժամուան մէջ, իսկ անպաշտօն աղբիւրներ մինչեւ հարիւր կը հաշուէին վնասարարութեան ձեռնարկները: Ցոյց մըն ալ տեղի ունեցաւ մայրաքաղաքին կեդրոնը, Թագաւորին հրաժարումը պահանջելու համար: Ամէնէն մեծ գործադուլը սարքուած էր Վալոնիոյ Պռապան քաղաքին մէջ, 18 հազար բանթողներով: Պ. Սփաք, նախկին ընկերվարական վարչապետը, պատասխանելով Թագաւորին հաշտութեան կոչին, յայտարարեց.— «Թագաւորնի գործը չէ ներել եւ մոռնալ, այլ ազգին որ գանգատներ ունի իրեն դէմ: Մենք չենք ուզեր իր ներումը»:

ՈՍԿԻՆ 3ուկէս առ հարիւր բարձրացաւ Գշ. օր, Փարիզի հրապարակին վրայ: Թերթերը երկու միլիառ ֆրանք կը հաշուեն այդ օր կատարուած պաշտօնական եւ անպաշտօն գործառնութիւնները: Կրամը 515 ֆրանքէն բարձրացած էր մինչեւ 533ի, նափոլէոնը՝ 3690ի, քսաննոց տոլարը՝ 18.240ի, զուից. ոսկին՝ 3680ի, սթերլինը՝ 4500ի: Թղթադրամներն ալ բարձրացան,— տոլարը (սեւ շուկայ) 388—398ի: Ձոյլ ոսկին մինչեւ 430 հազար ֆրանքի իջած էր Մայիսին: Յունիսին քիչ մը բարձրացաւ, իսկ առջի օր կ'արժէր 533 հազար (24 առ հարիւր յաւելում ):

ԻՍՐԱՅԷԼԵԱՆ օդանաւ մը զարկաւ Լիբանանի առեւտրական մէկ սաւառնակը, որ Պէյրութ կ'երթար Երուսաղէմէն: Երկու հոգի սպաննուեցան: Լիբանան բողոքեց Ազգաժողովին :

ՆՈՒԱԶԱԳՈՅՆ ԱՊՐՈՒՍՏԸ ամսական 15.200 ֆր. նշանակած է հաւաքական պայմանագրութեանց յանձնախումբը, 7152 ֆր. ուտելիք, 8048 միւս ծախքերը հաշուելով: Աշխատանքի Դաշնակցութիւնը կ'առաջարկէ 19 հազար, Բանուորական Ուժը՝ 16.768 ֆրանք :

Imprimerie DER AGOPIAN , 17 rue Damesme – (13)
Le Gérant : A. NERCESSIAN

## Խանասորի տարեդարձը

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մեծ պատրաստութեամբ կը տօնուի Օգոստոս 6ին, կիրակի ամբողջ օրը, Վալապրի անտառին մէջ:

Շրջանի մարմինները պարտաւոր են այժմէն ապահովել իրենց երթեւեկի միջոցները:

× Խանասորի արշաւանքին — Վալապրը — արձանագրուելու համար դիմել մսագործ Արիստակէս Պետրոսեանի 20 rue des Petites Maries, Ծերեկեանի 13 rue des Dominicaines եւ Ա. Քէօսէեանի Photo Rex, Place Jules Guesde:

× Պօմոնի համար դիմել ընկեր Գ. Քէնտիրեանի: Լա Ռօզիէրի համար ընկեր Ե. Տէր Մեսրոպեանի :

## Դաշտահանդէս

ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻՆ 53րդ տարեդարձին առթիւ: Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի « Վարանդեան » կոմիտէին, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Փոն տը Շէրիւի «Անդրանիկ» խումբին :

Այս կիրակի ամբողջ օրը Փոն տը Շէրիւի հովասուն անտառին մէջ:

Օթօքարները կը մեկնին ժամը ճիշդ 9ին Place Guichardէն : Տոմսերը կը ծախուին ընկերներ Մ. Միրզէի Ա. Թաթուլեանի եւ Ս. Նաճարեանի մօտ: Կանխաւ ապահովել տոմսերը :

## Դաշտահանդէս

### ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

Նախաձեռնութեամբ Սէնթ Էթիէնի Հ. Յ. Դ. «Անտոք» եւ Սէն Շամոնի Հ. Յ. Դ. Վարուժան ենթակոմիտէներուն, կը տօնուի Խանասորի արշաւանքի 53րդ տարեդարձը :

Այս կիրակի, հանրածանօթ «Պաղ Աղբիւր»ի մօտ :

Place Donanէն առնել հանրակառքը մինչեւ Rond Point, եւ ուղղուիլ դէպի La Métarre:

Կը խօսի ընկեր Կ. ԹԱՇՃԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին: Առատ եւ մատչելի պիւֆէ :

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէի, Խանասորի արշաւանքին տարեդարձին առթիւ, այս կիրակի, Prémolի անտառին մէջ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ :

## Մեծ դաշտահանդէս

Կազմակերպուած Առնուվիլլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի կառվարենց խումբին կողմէ, այս կիր. ժամը 10էն 21 Ecouenի «Jeu de Paume» անտառին մէջ:

Գեղարուեստական բաժին : Ճոխ պիւֆէ

Հաղորդակցութիւն.— Օթօպիւս թիւ 268, Porte de la Chapelleէն , իջնել Carrefour de l'Espé – rance,, Villiers le Bel :

Պ. ԱՇՕ ՇԱՀԽԱԹՈՒՆԻ իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ բոլոր բարեկամներուն եւ ազգ. միութեանց, եւ մասնաւորապէս ֆրանսացի եւ անգլիացի արուեստագէտներուն, որոնք անձամբ, ծաղկեպսակով կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իր սիրեցեալ կնոջ՝ ՆԻՆԱ ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ զառնաղէտ մահուան առթիւ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Մարսէյլէն Հէքիմեան եւ Թաշճեան ընտանիքները իրենց շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որոնք, անձամբ կամ նամակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց հօր՝ 87ամեայ Պ. ԱՒԵՏԻՍ ԹԱՇՃԵԱՆԻ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 18 Յուլիս 1950ին:

### ԾԻԾԱՂԻ ԵՐԵԿՈՅ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Ծանօթ դերասան ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ մասնակցութեամբ տէր եւ տիկին ԼՈՒՍՊԱՐՈՆԵԱՆներու, այս շաբաթ գիշեր ժամը 9ին Théâtre Mazenodի մէջ 88 rue d'Aubagne: Ա. անգամ ըլլալով կը ներկայացնէ Յ. Յ. Յ. Ամիրեանի

ԱԿՆՑԻ ՀԱՃԻ ԱՂԱՆ ԵՒ ՍԱՄԱԹԻԱՑԻ ԳՈՀԱՐԻԿ
(3 Հարսանիք մէկ տան մէջ)

Ներկայացումը կ'աւարտի ճիշդ ժամը 11.30–ին: Մարսէյլէն կը մասնակցին Մութաֆեան, Պէշկէօթիւրեան, Ե. Սարըպօղոսեան :

Նոյն ներկայացումը 31 Յուլիս երկուշաբթի գիշեր Պօմոն, սինէմա Ֆլօրէալի մէջ :

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՄԷԿ ՇԱԲԱԹ ՈՒՆԻՔ ՓԱԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ 1949 Ապրիլ — 1950 Ապրիլի ձեր պարտքը:

ՕԳՈՍՏՈՍԷՆ ՍԿՍԵԱԼ ՊԻՏԻ ԶՍՏԱՆԱՆ անոնք որ չեն վճարած իրենց բաժնեգինը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ. — «Քրիստափոր» ենթակոմիտէի հերթական ժողովը՝ այս ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, Ահարոնեան ակումբին մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն :

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէին ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30–ին, դպրոցին սրահը (78 rue Rabelais): Կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Կապոյտ Խաչի Պուլվառ Օտտոյի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս չորեքշաբթի ժամը 3ին , սովորական հաւաքատեղին : Օրակարգ.— Զեկուցում պատգմ. ժողովի եւ ընտրութիւն նոր վարչութեան: Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Պօմոնի «Զաւարեան» ենթակոմիտէն այս շաբաթ երեկոյեան ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Ներկայ պիտի ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Իսիի մասնաճիւղին ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Խրիմեան դպրոցը: Կարեւոր օրակարգ: Ընտրութիւն նոր վարչութեան :

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴՑԻԱԿԱՆ Միութեան Սէն Լուի մասնաճիւղին անդամական ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Համախարբերդցիական Միութեան մանսաճիւղի ընդհ. ժողովը՝ այս կիրակի առտու ժամը 9ին Պար տը Կլոպի սրահին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ, տարեվերջի առթիւ: Ընտրութիւն պատգամաւորի :

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ Տիկին Աղաւնի Մանուկեան, ծնած 1897ին, Վանա, Թրքահպատակ, կ'ապրէր փեսին եւ թոռներուն հետ Քլամարի մէջ, բնակարանէն մեկնած է 1949 Նոյեմբերին եւ այդ օրէն որեւէ լուր չէ առնուած իրմէ :

Տեղեկացնել ոստիկանական տեսչութեան 2 rue Leon Seché, Paris (15): Հեռաձայն Lecourbe 50-88:





## ՀԻՆԳ ԵՒ ՏԱՍԸ ՀԱԶԱՐՆՈՑ ԹՂԹԱԴՐԱՄՆԵՐԸ

Յուլիս 21էն սկսեալ Պանք տը Ֆրանսը շրջաբերութենէ հանեց 5 եւ 10 հազար ֆրանքնոց նոր թղթադրամներ:

Ինչպէս ծանօթ է, 5000նոց թղթադրամները 1948 Յունուարին շրջաբերութենէ հանուեցան Պ. Ռընէ Մայէրի որոշումով (ելմտական նախարար): Հրապարակէն քաշուած այդ դրամանիշներուն քանակը 350 միլիառ ֆրանքի կը հասնէր :

Կասկած չկայ թէ 5 եւ 10 հազարնոց դրամատոմսերուն վերեւելումը մեծապէս պիտի դիւրացնէ առեւտրական եւ ընթացիկ կեանքի գործողութիւնները: Ըսենք որ 5000նոցները մէկ երեսի վրայ կը ներկայացնեն Երկիրը եւ Ծովը եւ միւսին վրայ Առեւտուրը եւ Ճարտարարուեստը : Իսկ 10.000նոցները ձօնուած են ֆրանսական Հանճարին եւ Գիտութեան :

Դրամական շրջանառութեան յաւելումը անպատճառ չի նշանակեր թէ պետութիւնը թղթադրամ կը նետէ հրապարակը առանց համապատասխան արժէքի, այսինքն էնֆլասիոն կը կատարէ: Երբ պետական վարկին ամբարտակները աւելի լայնօրէն կը բացուին, կը կարծուի թէ էնֆլասիոն տեղի կ՚ունենայ :

Ատիկա սխալ է, բազմաթիւ պատճառներով : Նախ պէտք չէ մոռնալ որ գիներու բարձրացումը եւ գործելու ընդլայնումը կը պարտադրեն շրջաբերութեան հանուած թղթադրամի ծաւալին յաւելումը: Ասկէ զատ, էնֆլասիոնի շրջանները յատկանշող դրամի արժեզրկումը յառաջ կու գայ ոչ այնքան դրամատոմսերու քանակութեան յաւելումէն որքան դրամին շրջանառութեան թափին արագացումէն :

Երբ դրամատոմսերու քանակութեան վրայ կը խօսինք, պէտք չէ նկատի ունենանք միայն Պանք տը Ֆրանսի կողմէ հրապարակ հանուած դրամատոմսերը: Կ՚ապրինք այնպիսի շրջան մը ուր միայն պետութեան դրամատոմսերը չեն որ դրամական գումարին ամբողջութիւնը կը կազմեն:

Զմոռնանք որ դրամատուններու չէքերը, չէքփոսթալները, առեւտրական պարտաթուղթերը այսօր իսկական դրամներ են որոնք կը փոխանցուին եւ կը դիւրացնեն հատուցման բազմաթիւ գործողութիւններ, առանց իսկական դրամի վճարման :

Ամէն բան արտադրութեան մէջ կը կայանայ: Այն ատեն միայն էնֆլասիոն գոյութիւն ունի, երբ պետութիւնը, չկարենալով փոխառութեան դիմել, իր պաշտօնէութիւնը եւ իր գնումները կը վճարէ դրամատոմսերով որոնք ոչ մէկ առեւտրական, ճարտարարուեստական կամ երկրագործական արտադրութեան չեն համապատասխաներ, այսինքն դրամներով որոնք կեղծ հասոյթ մը եւ գնումի անբնական կարողութիւն մը կ՚ընծայեն զանոնք ունեցողներուն:

Բայց էֆլասիոն գոյութիւն չունի, երբ արտադրութիւնը խթանելու եւ աւելցնելու համար պետական վարկը կը կանխէ զանոնք նոր դրամատոմսերու ստեղծումով: Կարեւորը այն է որ նոր դրամին քանակութիւնը համապատասխան ըլլայ արտադրողներուն, առեւտրականներուն եւ սպառողներուն պէտքերուն:

Հ. Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

---

կարճ խօսքով, Արեւմտեան եւ Հարաւային դուռները բաց են Ռուսիոյ առջեւ :

Զկայ ուժ մը որ կարենայ դիմագրաւել Իրանի ճամբով դէպի Սուէզի Ջրանցքը արշաւող ռուս բանակի մը :

Թուրքիոյ եւ արեւմտեան Եւրոպայի համար պայմանները նոյնը չեն թէեւ, սակայն բացայայտ է ռուսական զինուորական գերակայութիւնը :

Տեղական կամ ընդհանուր պատերազմի մը խնդիրները քննելու առթիւ ամէն բանէ առաջ պարտաւոր ենք մեր սեփական ուժին վստահիլ :

Հինգ տարիէ ի վեր Ճափոնի մէջ պատրաստութիւն տեսնող ամերիկեան բանակը առնուազն մէկ ամսուան պայմանաժամի կարօտեցաւ՝ իր, քթին տակը գտնուող Քորէայի օգնութեան փութալու համար: Այս պայմաններուն մէջ կարելի է հաշուել թէ անգլեւսաքսոն ցամաքային բանակները որքան ժամանակի պիտի կարօտին՝ Եւրոպայի կամ Միջին Արեւելքի դէմ յարձակում մը կատարուելու պարագային :

Այս լոյսին տակ, պէտք է խոստովանինք թէ մասնաւորաբար վերջին երկու ամսուան ընթացքին չափազանց զբաղեցանք ներքին վէճերով:

Հասած է ժամը որ դադրեցնենք ներքին վէճերը, տեսնենք մեր շուրջի անցուդարձերը՝ կատարելու համար ազգային ճակատագրի աւագ պարտականութիւնը որ անհրաժեշտ կը դարձնէ արտաքին վտանգին դէմ համախմբել մեր բոլոր ուժերը »:

---

## ՏԽՐՈՒՆԻ — ԱՐՇԱԿ ՄԱՐՏԻԿԵԱՆ

Ցաւով հաղորդած էինք թէ Յունիս 23ին Ֆրէզնոյի մէջ յանկարծամահ եղած է Պ. Արշակ Մարտիկեան, 50 տարեկան :

Մեր ողբացեալ բարեկամը ունեցած է հանրային բեղուն գործունէութիւն մը, մասնաւորապէս ԱՆԶԱյի աշխատանքներուն մէջ, իբրեւ իր եղբօր՝ Ճորճ Մարտիկեանի աջ բազուկը :

Արշակ, բնիկ Բաբերդի Քսանթա գիւղէն, 1906ին, իր ծնողքին հետ Պոլիս գաղթելով, կը հաստատուի Սկիւտար եւ կը յաճախէ Ս. Խաչ վարժարանը: Հազիւ 14 տարեկան էր, երբ հայրը զինուոր կանչուած ըլլալով, ընտանիքին հոգը կ՚իյնայ իր վրայ: Շնորհիւ իր ուշիմութեան, 19 տարեկանին կը դառնայ վարպետ կօշկակար մը:

Պատերազմէն վերջ, հայրը վերդարձած ըլլալով, Մարտիկեան ընտանիքը կը պատրաստուի Հայաստան երթալու: 1920ին պատանի եղբայրը՝ Ճորճ (Գէորգ) միանալով աննման Վահան Զէրոքի եւ խումբ մը Պոլսեցի երիտասարդներու, գնաց Հայրենիք, ծառայելու Հանրապետութեան: Դժբախտաբար բոլշեւիկեան իշխանութեան հաստատումը կը խորտակէր իրենց բոլոր յոյսերը եւ Արշակ 1921ին կը գաղթէ Քալիֆորնիա, իր քրոջը հետ :

Նախ կը զբաղէր կօշկակարութեամբ եւ դժուարաւ կը ճարէր ապրուստը, երբ փոքր Ճորճն ալ Ամերիկա հասաւ 1922ին, հրաշքով ազատուած հայ – թրքական պատերազմին: Ճորճ կը բանար հռչակաւոր «Օմար Խայեամ» ճաշարանը, ուր Արշակ պիտի դառնար ամէնուն սիրելի դէմք մը:

Ոչ միայն իր առեւտրական գործին մէջ կը դառնայ Ճորճին թանկագին գործակիցը, այլ եւ սրտանց կը մասնակցի հանրային ու ազգօգուտ ամէն ձեռնարկի, մասնաւորաբար Ֆրէզնոյի եկեղեցիին, Հ. Օ. Միութեան, Հ. Յ. Դ. ակումբներուն, Հայկ. Դատի եւ Դաշնակցական մամուլի համար կատարուած հանգանակութեանց եւ վերջապէս «ԱՆԶԱյին» Յուղարկաւորութեան ատեն, իր ջանքերով Ամերիկա բերուած գաղթականներ իբրեւ երախտագիտական արտայայտութիւն իրենց ձեռքով կրեցին դագաղը: Յուզիչ էր մանաւանդ իր բացակայ եղբօր նամակը: Արդարեւ Պ. Ճորճ Մարտիկեան անկողին գամուած ըլլալով, հիւանդանոցի մը անկիւնէն կը հաղորդէր իր վերջին «մնաք բարով»ը իր երէց եղբօր որուն հետ այնքան «տաք ու պաղ» բաժնած էր Բաբերդէն Սկիւտար եւ Ամերիկա: Նամակը կարդաց ԱՆԶԱյի քարտուղարը, ընկեր Արմէն Պարտիզեան : Հոծ բազմութիւն մը կը հետեւէր դագաղին: Դամբանականներ խօսուեցան թէ եկեղեցիին եւ թէ գերեզմանին մէջ: Բազմաթիւ ծաղկեպսակներ, Միութիւններու եւ բարեկամներու կողմէ նուիրուած, կը ծածկէին հողակոյտը: Այդ առթիւ եղած նուէրները նոյն օրը հասած էին 1400 տոլարի:

Այս գումարով կազմուած է «Արշակ Մարտիկեան ֆոնտը», ի նպաստ ԱՆԶԱյի :

---

« ՅՈՒՍԱԲԵՐ»Ի ՏԱՆ շինութեան աշխատանքները բուռն թափով առաջ կը տարուին: Վերջանալու մօտ են առաջամասին երկրորդ յարկին կրողիւսի աշխատանքները: Այս յարկին վրայ ըլլալով թատերասրահը, շինութեան ամէնէն բարդ մասն է : Ի նպաստ շէնքի կառուցման հանգանակութիւնը կը շարունակուի :«Յուսաբեր» մշակութային Միութեան անդամները նորէն կարեւոր գումարներ տրամադրած են: Պաղտատի, Մուսուլի, Ապատանի, Թէհրանի, Կիպրոսի եւ Աթէնքի մէջ «Յուսաբեր»ի բարեկամները հանգանակութիւններ կազմակերպած են: Միայն Մուսուլի մէջ հանգանակուած է 133 իրաքեան ոսկի:

ԹԷՀՐԱՆԻ մէջ մեռաւ Տիկին Աննա Բուդաղեան: Այս տխուր առթիւ Տիկին Էլիզ եւ Պ. Պ. Արամ, Յովհաննէս եւ Հրանտ Բուդաղեանններ իրենց ողբացեալ մօր յիշատակը յարգելու համար որոշած են Հայոց Բուրաստան – գերեզմանատունը օժտել արթեզեան ջրհորով մը, որուն ծախքը կը նախատեսուի կէս միլիոն ռիալ : Գերեզմանատունը մինչեւ այժմ ջուր չունենալով եկեղց. վարչութիւնը տարեկան 40.000 ռիալի ծախքի մը ենթարկուած է: Բացուելիք ջրհորը ոչ միայն պիտի գոհացնէ հայկ. գերեզմանատան պէտքերը եւ 40 հազար ռիալի խնայողութիւն մը պիտի ապահովէ, այլեւ յաւելեալ ջուրի վճառումով կարեւոր հասոյթ մը պիտի գոյանայ ի նպաստ տեղւոյն ազգային եւ կրթական հաստատութեանց :

---

ՇՈՒԷՏԻ ԵՒ ՏԱՆԸՄԱՐՔԱՅԻ կառավարութիւնները նոյնիմաստ բողոքագիրներ ուղղեցին Խ. Միութեան, որ 12 մղոնի բարձրացուցած է իր պաշտպանութեան շրջագիծը, Պալթիկ ծովուն մէջ, (Նախապէս 3—4 մղոն):

ՉՈՐՐՈՐԴ ԴԱՐՈՒ եկեղեցի մը գտնուեցաւ Նազարէթի մօտ (Երուսաղէմ) ուր ապրած եւ քարոզած է Քրիստոս :

---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (133)

# ՄԵԼԻՔԻ ԱՂՋԻԿԸ

ԺԵ.

Եւ Աննա Խաթունը դարձեալ չը նեղացաւ իր փեսային ...

Իսկ Գայիանէն սպասում էր:

Շունը երկու անգամ հաչեց: Գալիս են: Նա շտապով դուրս քաշեց խէնջարը պատեանից: Խընամքով յղկած պողպատը շողշողաց, իսկ երկու սուր բերանները խօսեցին նրա հետ, ասացին որ երկաթն էլ չի դիմանայ իրանց: Հիանալի էր այդ խօսքը.. Պողպատի շողը ընկաւ նրա աչքերին, մի փայլուն յոյսի պէս տարածուեց նրա երակներում եւ երկու կաթիլ արտասունք հանեց նրա աչքերից:

— Օ, հանգստացիր, դու կը սպաննես, արտասանեց նա պողպատի ձայնով :

Ինքն իր հետ էր խօսում ...

Եւ սպասում էր, անհամբեր էր, արդէն ձանձրանալու վրայ էր:

Յանկարծ նա դողաց, զգալով որ երկու ձեռքեր փաթաթուեցին իր վզին: Յետ նայեց. նա բոլորովին մոռացել էր, որ իր եղբայրը ականատես է իր ուխտին: Յովսէփն էր, որ պինդ գրկեց քրոջը. նրա աչքերն էլ լցուել էին արտասուքով :

— Մի հատ էլ ինձ տուր, քոյրիկ, ասաց նա ընդհատուող ձայնով :

— Ի՞նչ ... = Դրանից ... Իմ ձեռքը չի հասնի զէնքերին, դու լաւ ես կանգնում բուխարու քարի վրայ... Ես չեմ կարող ...

— Քեզ հարկաւոր չէ, Յովսէփ... Զէնքը խաղալիք չէ ...

Յովսէփը վեր կացաւ: Նա նեղացած էր այդ խօսքերից, նրա դէմքը չառագունել էր, աչքերը բորբոքուած էին: Նա կատարեալ տղամարդ էր. կարծես սակաւախօս, կծկուած երեխան մի ժամում մեծացել էր, ահագին հասակ քաշել :

Ինչպէս նա գնաց դէպի բուխարին, հերոսական ջանքեր անելով որ իր կաղ ոտը չընդդիմանայ իր կամքին. ինչպէս երկու ձեռքով յենուեց պատին, առաջ առողջ ոտը դրեց քարի վրայ, ապա քաշեց, տարաւ կաղ ոտը եւ կանգնեց: Նա դողում է, վայր կ՚ընկնէ, բայց չէ վախում, արհամարհում է մարմնի թուլութիւնը, նոյն իսկ բարձրանում է առողջ ոտի մատների վրայ եւ ձեռքը տանում է դէպի բարձր, դէպի զէնքերը :

Գայիանէն զարմացած է. ուզում է վեր կենալ, բռնել նրան: Բայց երեխան ինքը տեսնում է, որ զուր է աշխատում. ձեռքը չհասաւ զէնքերին. եւ մի ոստիւնով ցած իջնելով, նա օրօրւում է եւ ասում .

— Տուր, քոյրիկ... Օ, ես լաց կը լինեմ, տուր ...

— Բայց ինչի՞դ է, Յովսէփ ...

— Ես քեզ հետ եմ... Ես էլ կըսպաննեմ եւ կը սպաննուեմ:

Անակնկալ խօսքեր կան, որոնց չէ կարելի պատասխանել: Եւ Յովսէփը չըթողեց էլ, որ իր քոյրը զարմանք յայտնէ: Կարծես չը կարողանալով դիմանալ իր մտքերի ծանրութեանը, նա ընկաւ ծնկների վրայ եւ շարունակեց.

— Յովսէփը երեխայ չէ, Յովսէփը գիտէ ամէն ինչ. Նա շատ է լաց եղել իր քոյրիկի համար ... Նա հիմա լաց չի լինի, նա էլ կը խփէ...

— Դու... ի՞նձ համար ...

— Քեզ չարչարում են... Բայց մի վախիր, դու արդար ես... Մինչեւ այժմ ես ատում էի չարչարողներին. քոյրիկ, հիմա իմացայ որ նրանց պէտք է սպաննել ... Շահնազարը ինձ ծեծում է եւ ես ատու մեմ նրան, բայց ես նրան չեմ սպաննի, այլ կ՚աղաչեմ որ նա էլ մի սուր վերցնէ, քեզ հետ միասին լինենք: Մենք չենք վախում վատ մարդկանցից, այնպէս չէ՞, քոյրիկ: Նոյն իսկ Թուրք Բէկից էլ չենք վախի... Կը սպաննենք եւ կը սպաննուենք ...

Երեխան կարծես ջերմուտենդի մէջ էր: Նրա թոյլ կազմուածքի մէջ բորբոքուած կրակը արտայայտւում էր խիստ ցնցումներով :

Գայիանէն առաջին վայրկեան վախեց: Բայց Յովսէփը այժմ բութ ու անտարբեր երեխայ չէր. նա հասկանում էր թէ ինչ է ասում, նա պահանջում էր եւ հաւատացնում որ ինքը կարող է... Այդ ձայնը, որ դուրս էր գալիս կենդանի մարդուց, որ դողում էր ներքին կրակից, կրկնում էր նոյնը, ինչ ասում էր վաղուց հող դարձած զինագործը իր նկարի միջոցով : Ուրեմն աշխարհը չէ փոխուել :

Ոչ ... Այժմեան աշխարհի մէջ էլ կայ ուրիշ կարծիք, որ հակառակ է գիւղի կարծիքին :

ԼԷՕ

